## ՊԱՆԾԱԼԻ 60-ԱՄՅԱԿ

1963 թվականի հուլիսի 30-ին լրանում է ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի 60-ամյակը: Դա այն համագումարն էր, որտեղ փաստորեն երևան եկավ նոր տիպի պարտիան՝ լենինյան բոլշևիկյան պարտիան:

Շուտով Սովետական Միության կոմունիստական պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը, եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաները, աշխարհի բոլոր առաջադեմ ուժերը լայնորեն նշելու են ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի պանծալի 60-ամյակը:

Ագիտատո՛ր, ակտիվորեն մասնակցիր փառապանծ հոբելյանի նախապատրաստման աշխատանքներին, աշխատավորների համար սիստեմատիկաբար զրույցներ կազմակերպիր՝ նվիրված ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի 60-ամյակին:

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 14
ՀՈՒԼԻՍ
1963

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՍՄԿՊ-Ի ՓՈՐՁԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Սովետական Միության կոմունիստական պարտիան անցել է մեծ ու փառավոր ուղի։ Նա իր հերոսական պայքարի ու համաշխարհային պատմական հաղթանակների պրոցեսում դարձել է մեր երկրի բանվոր դասակարգի, ամբողջ աշխատավոր ժողովրդի միտն ու արյունը, նրա կենսական շահերի ու ռևոլյուցիոն կամքի արտահայտիչը։*

*ՍՄԿՊ-ն ստեղծվեց մարքսիզմի գրանիտյա բազայի վրա, ցարական ինքնակալության դաժան պայմաններում, երբ ռևոլյուցիոն շարժումների կենտրոնը արևմուտքից փոխադրվել էր արևելք, իր ոլորտի մեջ ներքաշելով աշխատավորական մասսաների նորանոր ջոկատներ։*

*Ծանր ու դժվարին է եղել մեր պարտիայի անցած պատմական ուղին։ Նա իր ճանապարհին հաղթահարել է մեծագույն դժվարություններ, անցել է լեգալ ու անլեգալ, ընդհատակյա ու բացահայտ պայքարի, հարձակման ու նահանջի մեծ ճանապարհ և այդ պրոցեսում կոփվել, առնականացել է, հզորացել է ձեռք բերելով միջազգային ռևոլյուցիոն շարժման համար այնքան կարևոր բազմահարուստ փորձ։*

*Լենինյան պարտիան հենվելով բանվորա-գյուղացիական անխախտ դաշինքի վրա, մեր երկրի աշխատավորական մասսաներին առաջնորդեց և հասցրեց պատմական հաղթանակների ինքնակալության ու բուրժուազիայի դեմ նրա մղած պայքարում։ Դրանով իսկ աշխարհում առաջին անգամ հաղթանակեց սոցիալիստական ռևոլյուցիան, հիմք դրվեց նոր հասարա-*



digitised by A.R.A.R.@

կարգի, բացվեց նոր դարաշրջանի՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանի սկիզբը։ Ռևոլյուցիան հաղթանակեց մի երկրում, որը իր մեջ ներառնում էր կապիտալիզմի վերջին ստադիային հատուկ բոլոր հակասությունները։ Կյանքը լիովին հաստատեց Վ. Ի. Լենինի այն կանխատեսումը, որ կապիտալիզմը անկարող է լուծել կամ հաղթահարել այդ խորագույն հակասությունները, որ դրանք կարող են լուծվել միայն պրոլետարական ռևոլյուցիայի միջոցով։ Դրանով իսկ մեր հերոսական բանվոր դասակարգը դարձավ միջազգային ռևոլյուցիոն շարժման ավանգարդը, մեր պարտիան՝ այդ ավանգարդի առաջատար ղեկավար ուժը, իսկ մեր երկիրը՝ համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի հենակետը։

Ռևոլյուցիոն պայքարի ու հաղթանակների, ապա նաև սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում պարտիան ձեռք բերեց և կուտակեց հսկայական փորձ, որը Վ. Ի. Լենինի արտահայտությամբ իր «հարստությամբ աշխարհում հավասարը չուներ»։ Այդ փորձը իրենից ներկայացնում էր հսկայական ուժ միջազգային պրոլետարիատի ու նրա ռևոլյուցիոն մարքսիստական պարտիաների համար, որովհետև ցույց էր տալիս դարավոր անարդարության վերացման և նոր կյանքի կառուցման կոնկրետ ուղիները։

Դեռ 1920 թվականին Վ. Ի. Լենինը մերկացնելով II ինտերնացիոնալի առաջնորդներին, որոնք ժխտում էին մեր ռևոլյուցիայի փորձի միջազգային նշանակությունը, գտնելով, որ հետամնաց երկրում կատարված ռևոլյուցիայի փորձը հնարավոր չէ օգտագործել առաջավոր երկրներում և որ այն ունի զուտ տեղական, ազգային, ռուսական նշանակություն,— գրում էր. «Այժմ արդեն մենք մեր առաջ ունենք միջազգային բավականաչափ շատ փորձ, որը լիակատար որոշակիությամբ ասում է, որ մեր ռևոլյուցիայի մի քանի հիմնական գծերն ունեն ո՛չ թե տեղական, ո՛չ թե ազգային առանձնահատուկ, ո՛չ թե միայն ռուսական, այլ միջազգային նշանակություն» (Երկեր, հ. 31, էջ 5)։

Վ. Ի. Լենինը միաժամանակ ընդգծում էր, որ բոլոր երկրների վրա մեր ռևոլյուցիայի ունեցած ազդեցության իմաստով, մեր ռևոլյուցիայի բոլոր հիմնական և շատ երկրորդական գծեր ունեն միջազգային նշանակություն։ Նա նշում էր, որ մեր պարտիայի հարուստ փորձը կարող են օգտագործել բոլոր երկրների կոմունիստները, բոլոր այն պարտիաները, որոնք կոչված են ղեկավարելու բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարը։

Մեր փառապանծ պարտիայի պատմական փորձը ամբողջ աշխարհի մարքսիստական պարտիաներին, միջազգային ռևոլյուցիոն շարժմանը ցույց տվեց, որ միայն օպորտունիզմից ու հաշտվողականությունից զերծ և շահագործող դասակարգերի նկատմամբ միշտ անհաշտվողական պարտիան կարող է բանվոր դասակարգին առաջնորդել ու ապահովել հաղթանակը։ Այդպիսին կարող է լինել միայն մարքս-լենինյան պարտիան, որը չունի ոչ մի ուրիշ նպատակ, բացի բանվոր դասակարգի մեծ գործին անձնվիրաբար ծառայելուց։

Նվաճելով քաղաքական իշխանություն, պարտիան իր փորձով ցույց տվեց մարքսիզմ-լենինիզմի այն անառարկելի ճշմարտությունը, որ անցման շրջանի դժվարագույն խնդիրները կարող են լուծվել միայն բանվոր դասակարգի քաղաքական իշխանության, պրոլետարիատի դիկտատուրայի միջոցով։ Պարտիան դրանով իսկ ելնում էր Լենինի այն դրույթից, որ միայն «...պրոլետարիատի անպայման կենտրոնացումը և խստագույն կարգապահությունը հիմնական պայմաններից մեկն է բուրժուազիային հաղթելու համար» (Երկեր, հ. 31, էջ 9)։

Պրոլետարիատի դիկտատուրան անհրաժեշտ էր ոչ միայն տապալված դասակարգի դիմադրությունը ճնշելու և երկրի պաշտպանությունը կազմակերպելու համար, այլև միլիոնավոր աշխատավորական մասսաներին և ամենից առաջ աշխատավոր գյուղացիությանը սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելու համար։

Սակայն բանվոր դասակարգի բոլոր պարտիաները չէ, որ կարող են իրականացնել նրա պատմական մեծ միսիան։ Միայն առաջավոր մարքս-լենինյան ամենահաղթ գաղափարներով զինված պարտիան կարող է ապահովել ռևոլյուցիայի հաղթանակը։ Այդ թեորիայի հսկայական, աշխարհը վերափոխող ուժը նրանում է, որ նա ոչ միայն ճիշտ է գնահատում պատմական անցյալն ու ներկան, այլև տալիս է ապագայում ճիշտ կողմնորոշվելու և ռևոլյուցիոն պրակտիկայի ու կոմունիստական շինարարության առաջադրած բազմապիսի հարցերի ճիշտ պատասխանը։

Հավատարմություն մարքս-լենինյան գաղափարներին, պայքար նրա անաղարտության համար, պայքար հակապարտիական բոլոր հոսանքների ու խմբերի դեմ, կյանքի առաջադրած հարցերին համապատասխան այդ թեորիայի դրույթների ստեղծագործական կիրառում, թեորիայի և պրակտիկայի օրգանական միասնություն, ահա թե որոնք են տեսության նկատմամբ մեր պարտիայի ներկայացրած պահանջները։ Այդպես էր մոտենում Լենինը մարքսիստական ուսմունքին պատմական յուրաքանչյուր կոնկրետ պայմաններում, այդպես է մոտենում պարտիան ներկա էտապում, երբ մեր երկի-





7996-63

digitised by A.R.A.R.@

իր թեակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը:

Մեր պարտիայի փորձը ուսուցանում է, որ ռևոլյուցիայի հաղթանակի գործում վճռական նշանակություն ունի բանվոր դասակարգի ուժերի միասնությունը: Իսկ դա ապահովվում է միայն բանվոր դասակարգի թշնամիների անխնա մերկացումով ու մեկուսացմամբ, նրանց գաղափարական ջախջախման շնորհիվ: Այս տեսակետից վերցրած, մեր պարտիայի պատմությունը որոշ իմաստով բանվորական շարժման ներսում, նրա թշնամիների դեմ մղած պայքարի պատմություն է: Մեր բանվոր դասակարգը չէր կարող տապալել միապետությունը ու բուրժուազիային, եթե պարտիան չջախջախեր ու մերկացներ մենշևիկներին, անարխիստներին ու նացիոնալուկլոնիստներին, եթե նա չմերկացներ մանր-բուրժուական համաձայնողական պարտիաներին, եթե նա անողոք պայքար չմղեր խոշոր բուրժուազիայի ու կալվածատիրության դասակարգային շահերն արտահայտող կադետների, միապետականների և ուրիշների դեմ:

Դրա հետ մեկտեղ պարտիան հետևողական պայքար ծավալեց իր շարքերում տեղ գտած օպորտունիզմի ու համաձայնողականների դեմ, դրանով իսկ ապահովելով իր շարքերի միասնությունը, մշակելով ներպարտիական կյանքի բարձր կազմակերպվածություն, միասնական կամք և երկաթյա կարգապահություն:

ՍՄԿՊ-ն բանվոր դասակարգի նկատմամբ իր ղեկավար առաջատար դերը ապահովեց և ապահովում է այն բանի շնորհիվ, որ նա հազարավոր թելերով կապված է աշխատավորական մասսաների հետ, լսում է նրանց ձայնը, որ պարտիայի ստրատեգիայի և տակտիկայի ճշտության մեջ մասսաները համոզվում են պրակտիկ կյանքում:

Մեր պարտիայի փորձը եղբայրական պարտիաներին ուսուցանում է, որ քննադատությունը, ինքնաքննադատությունը մեր զարգացման օրինաչափությունն է, նրա առաջ մղող ուժը: Հակառակ արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական պարտիաների, որոնք կոծկում էին սեփական սխալներն ու թերությունները, մեր պարտիան համարձակորեն բացահայտում է իր աշխատանքի թերությունները, կադրերին դաստիարակում ոչ միայն հաջողությունների, այլև աշխատանքի թերությունների ու սխալների վրա: Պարտիայի կողմից իր աշխատանքի սխալների ու թերությունների լենինյան քննադատության վառ օրինակ էր Ստալինի պաշտամունքի մերկացումն ու նրա տխուր հետևանքների վերացման ուղղությամբ ձեռնարկած վճռական միջոցառումները:



ՍՄԿՊ-ն նոր հասարակարգի կառուցման դժվարագույն ճանապարհին ձեռք բերեց խոշոր հաղթանակներ, հսկայական, անգնահատելի փորձ: Աշխարհում առաջին անգամ մեր պարտիան պատասխանեց այն հարցին, թե ինչ ձևով կարելի է վերակառուցել խոշոր արդյունաբերությունը և այն առաջ մղել առաջադիմության ուղիով: Դրանով իսկ ստեղծվեց փորձ արդյունաբերական տեսակետից զարգացած բոլոր այն երկրների համար, որոնք պատմության առաջընթացի օբյեկտիվ ընթացքով անհրաժեշտաբար բռնելու են սոցիալիզմի ուղին: Մեր փորձը աշխարհի ագրարային շրջանների բոլոր այն երկրներին, որտեղ տիրապետում են ֆեոդալական կարգերը, ցույց է տալիս, թե ինչ ճանապարհով կարելի է բռնել սոցիալիզմի զարգացման ուղին, թե ինչպես կարելի է ստեղծել ու դաստիարակել բանվոր դասակարգին բոլոր այն երկրներում, որտեղ նա չկա, ինչպես կառուցել առաջավոր սոցիալիստական արդյունաբերություն և վերակառուցել փոշիացած գյուղացիական տնտեսությունները սոցիալիստական հիմունքներով: Պարտիան իր բազմահարուստ փորձով ցույց տվեց, որ պատմական կարճ ժամանակամիջոցում կարելի է լիկվիդացնել գաղութային կախվածության խայտառակ հետևանքները և պատմության պրոգրես դուրս բերել փոքր ժողովուրդներին, որոնց կապիտալիզմը հետ էր մղել մի ամբողջ դարաշրջան:

ՍՄԿՊ-ի փորձը, որ նա ձեռք է բերել իր պայքարի 6 տասնամյակներում, անգնահատելի ծառայություն է բոլոր երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների մղած հերոսական պայքարում: Այն ոչ միայն ուսանելի է, այլև կիրառելի բոլոր երկրներում:

Սոցիալիզմի լագերի երկրների համար այդ փորձը հսկայական չափով օգնում է սոցիալիստական շինարարության կոնկրետ խնդիրների լուծմանը: Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգին այն ցույց է տալիս շահագործող դասակարգերի տապալման կոնկրետ ուղիները, իսկ ազգային անկախություն նվաճած ժողովուրդներին հնարավորություն է ընձեռում արագորեն կանգնելու զարգացման ոչ կապիտալիստական ուղու վրա:

Այժմ եղբայրական կոմունիստական բանվորական պարտիաների համար ստեղծվել են ավելի մեծ հնարավորություններ: ՍՄԿՊ-ի համաշխարհային պատմական փորձին միացել է սոցիալիստական լագերի երկրների կոմպարտիաների հարուստ փորձը: Սոցիալիզմի շրջանակների ընդարձակվելը միաժամանակ ուժեղացրել է նրա միջազգային ռևոլյուցիոն ընթացքի վրա ունեցած ազդեցությունը:

Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ մեր պարտիայի կու-



digitised by A.R.A.R.@

տակած փորձը եղբայրական պարտիաները պետք է օգտագործեն ստեղծագործաբար, որ բոլոր դեպքերում նրա քարացած, մեխանիկորեն ընդօրինակումը ոչ թե օգուտ, այլ մեծ վնաս կհասցնի բանվոր դասակարգին։ Լենինը գտնում էր, որ յուրաքանչյուր երկրի բանվոր դասակարգ և նրա մարտական պարտիան մեր փորձը պետք է օգտագործեն իրենց ձևով, հաշվի առնելով տվյալ երկրի կոնկրետ առանձնահատկությունները, նրա էկոնոմիկայի, քաղաքականության, կուլտուրայի, նրա ազգային կազմի, դասակարգային ուժերի հարաբերակցության, դասակարգային պայքարի աստիճանն ու խորությունը։

Ընդգծելով բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական շարժման ինտերնացիոնալ տակտիկայի միասնության անհրաժեշտությունը Լենինը միաժամանակ նշում էր, որ դա չի պահանջում բազմազանության ու տարբերությունների վերացում, այլ կոմունիզմի հիմնական սկզբունքների այնպիսի կիրառում, որը «...մասնավորություններում ճիշտ ձևափոխեր այդ սկզբունքները», այն հարմարեցներ ազգային ու պետական տարբերություններին։ Վ. Ի. Լենինը եղբայրական կոմպարտիաներին ուսուցանում էր, որ պատմական յուրաքանչյուր դեպքում նրանք պարտավոր են հաշվի առնել կոնկրետ պայմանները և դրան համապատասխան մշակել իրենց տակտիկան այս կամ այն հարցում։ «Յուրաքանչյուր երկրին կոնկրետ մոտեցում ունենալով,— գրում էր Վ. Ի. Լենինը,— հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգային-առանձնահատուկը, ազգային-սպեցիֆիկը՝ միասնական ինտերնացիոնալ խնդիրը լուծելու համար...»։ (Երկեր, հ. 31, էջ 98)։

Պրոլետարիատի մեծ առաջնորդի այս բառերը այժմ էլ թարմ են ու կենսունակ բոլոր մարքսիստական պարտիաների համար։

Սոցիալիզմի լագերի պատմական հաղթանակները, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման խոշոր նվաճումները, ազգային-ազատագրական շարժման հսկայական թափը այն բանի վառ ապացույցն է, թե ինչպես եղբայրական պարտիաները իրենց առջև ունենալով աշխարհի ամենափորձված կոմունիստական պարտիայի՝ ՍՄԿՊ-ի փորձի օրինակը, այն իրենց երկրների կոնկրետ պայմաններում օգտագործում են ստեղծագործաբար։

Դրանով պետք է բացատրել այն փաստը, որ մեզ հետ շարժվեցին և՛ զարգացած ինդուստրիալ Չեխոսլովակիան, և՛ ագրարային Լեհաստանն ու Ռումինիան, և՛ իմպերիալիզմի լուծը թոթափած Ասիայի մի շարք երկրներ։



Պաշտպանելով մարքս-լենինյան գիտության անաղարտությունը և այն զարգացնելով նոր պայմաններում, օգտագործելով մեր պարտիայի փորձը, կոմունիստները հետևողականորեն և վճռականապես պայքարում են ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և աղանդավորության դեմ։ Եթե ռևիզիոնիզմը նոր պայմանների հաշվառման անհրաժեշտության քողի տակ փորձում է մարքսիզմ-լենինիզմից հանել նրա ռևոլյուցիոն շունչը, ապա դոգմատիզմը կոնկրետ իրադրության խոր ու բազմակողմանի վերլուծումը փոխարինում է ցիտատների, կառչում է մարքսիզմի տառից, ամեն ինչ ընդունում է քարացած, դրանով իսկ մերժում այդ ուսմունքի ստեղծագործական բնույթը, թեորիան կտրելով ռևոլյուցիոն պրակտիկայից, սոցիալիստական շինարարության և կոմունիստական շինարարության պրակտիկայից։ Ահա թե ինչու կոմունիստական պարտիաները պայքարել և պայքարում են մարքսիզմ-լենինիզմի ոգուն խորթ, միջազգային ռևոլյուցիոն շարժման համար վտանգավոր դոգմատիզմի և ռևիզիոնիզմի դեմ։

Կառուցելով կոմունիզմ մեր պարտիան շարժվում է պատմության անհայտ ուղիով, ճանապարհ է հարթում ամբողջ մարդկության համար, նա իր փորձով ստուգում է այդ ուղիների ճշտությունը, վերցնում է կոմունիստական շինարարության լավագույն մեթոդներն ու ձևերը, դրանով իսկ հեշտացնելով մյուս ժողովուրդների անցումը դեպի սոցիալիզմ։

Կոմունիստական շինարարության օրինաչափությունները, որոնք ձևակերպված են ՍՄԿՊ ծրագրում, ունեն ընդհանուր բնույթ, սակայն նրանք իրագործվելու են յուրաքանչյուր երկրի պատմական և ազգային առանձնահատկությունների ճշգրիտ հաշվառման վրա։

Այսօր մեր պարտիայի պայքարի բովում ձեռք բերած բազմահարուստ փորձը օգտագործում են աշխարհի բոլոր մարքսիստական պարտիաները։ Բոլոր երկրների կոմունիստները մեծագույն ջանասիրությամբ ու մեծ պատասխանատվությամբ ուսումնասիրում են այն պարտիայի փորձը, որը մեր երկրի ժողովուրդներին հասարակական կյանքի բոլոր բնագավառներում հասցրեց այնքան վիթխարի, աշխարհը ցնցող նվաճումների։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի բաց նամակում ամենայն հստակությամբ նշված է ՍՄԿՊ փորձի միջազգային նշանակությունը։

«Կյանքը ցույց է տալիս,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի բաց նամակում,— որ, դառնալով համաժողովրդական քաղաքական կազմակերպություն, ՍՄԿՊ-ն ամրապնդեց իր կապերը մասսաների հետ, էլ ավելի մեծ ուժ ստացավ, աչքի է



digitised by A.R.A.R.@

ընկնում է՝ ավելի բարձր կարգապահությամբ։ Սոցիալիզմի հաղթանակով բանվոր դասակարգի գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմը, դարձել է ամբողջ ժողովրդի, նրա առաջավոր մասի գաղափարախոսությունը։ Բանվոր դասակարգի նպատակը՝ կոմունիզմի կառուցումը, դարձել է համաժողովրդական նպատակ։ Եվ կոմունիստական գաղափարախոսության ազդեցության այդ ուժեղացումից մարքսիստ լենինյանները կարող են, իհարկե, միայն ուրախանալ։ Մենք կարող ենք ասել, որ Վ. Ի. Լենինի մահվանից հետո՝ դեռ երբեք մեր պարտիան չի եղել այնպես ուժեղ, նոր աշխարհի կառուցման հետ կապված ամենահանդուգն խնդիրները լուծելու ընդունակ»։

Ռևոլյուցիոն տրադիցիաներին, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին հավատարիմ մեր լենինյան պարտիան ընթանում է կոմունիստների մեծ բանակի առաջին շարքերում։ Նա այսուհետև նույնպես հետևողականորեն ու անշեղորեն կամրապնդի կապերը եղբայրական պարտիաների հետ, կպայքարի հանուն խաղաղության, ազգային անկախության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի, հանուն մարքսիզմ-լենինիզմի լիակատար հաղթանակի։

Լենինի ստեղծած ու դաստիարակած Սովետական Միության պանծալի կոմունիստական պարտիան իր ամբողջ եռանդը նվիրում է մարքսիզմ-լենինիզմի աշխարհաշեն գաղափարների կենսագործմանը։ Սոցիալիզմի բոլոր երկրների, ամբողջ աշխարհի կոմունիստական ու բանվորական պարտիաների հետ ՍՄԿՊ-ի, սովետական կառավարության, ամբողջ սովետական ժողովրդի հարաբերությունների հիմքում ընկած են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։

Ա. ՓԱՐԵՄՈՒՋՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԱՎԱՆԳԱՐԴԸ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՃԸ ԿԱՊԻՏԱԼԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

*Միջազգային կոմունիստական շարժումը դարձել է մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժը, հասարակական պրոգրեսի կարևոր գործոնը։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

Միջազգային կոմունիստական շարժումը, ասված է ՍՄԿՊ ծրագրի մեջ, այժմ այնքան է հզորացել, որ ռեակցիայի միացյալ ուժերին չի հաջողվի ջախջախել այն։ Այժմ արդեն ոչ թե մի ուրվական է շրջում Եվրոպայում, ինչպես իր ժամանակին գրել են Մարքսն ու Էնգելսը, այլ բոլոր հինգ աշխարհամասերում ապրում ու պայքարում է կոմունիստների հզոր բանակը, որի շարքերում կան ավելի քան 42 միլիոն մարդ։ Ներկայումս կոմունիստական պարտիաներ են գործում գրեթե 90 երկրներում։ Բայց չէ՞ որ համեմատաբար վերջերս, մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը, նրանք գոյություն ունեին միայն 43 երկրներում և իրենց շարքերում միավորում էին ընդամենը 4.200 հազար կոմունիստների։ Միջազգային կոմունիստական շարժումն առաջ է ընթանում հսկայի քայլերով։

Կոմունիստների մեծ բանակի հիմնական մասը գտնվում է սոցիալիստական երկրներում։ Այստեղ կոմունիստական պարտիաները կառավարող, ղեկավարող և ուղղություն տվող ուժ են։ Նրանք իրենց ժողովուրդներին տանում են սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ճանապարհով։ Սոցիալիստական սիստեմի ամրապնդումն ու զարգացումը ռևոլյուցիոնականացնող խոր ազդեցություն է ունենում կապիտալի ամբողջ աշխարհի վրա, նպաստում է համաշխարհային կոմունիստական շարժման հետագա աճին։

Այդ շարժումն ընդլայնվում է տարեցտարի, իր դրոշների տակ հավաքելով նորանոր ուժեր։ Դրա ապացույցն են հետևյալ տվյալները. եթե 1939 թվականին կապիտալի երկրներում կար 785 հազար կոմունիստ, ապա այժմ այդ երկրների կոմպարտիաները միավորում են ավելի քան 5 միլիոն մարդ։ Ներկայումս մարքսիստական-լենինյան պարտիաներ կան բոլոր զարգացած կապիտալիստական պետություններում և բոլոր տնտեսապես ետ մնացած երկրներում։



digitised by A.R.A.R.@

Կոմպարտիաների շարքերն այդպես բուռն կերպով աճում են, չնայած ֆաշիստական և մյուս ռեակցիոն ուժերն այնպիսի երկրներում, ինչպիսիք են, օրինակ, Իսպանիան, Պորտուգալիան, Հունաստանը, փորձում են կոմունիստական շարժումը ճնշել հրով ու սրով։ Այդտեղ հարյուրավոր կոմունիստներ բանտերն են նետված, նրանցից շատերին ոչնչացնում են ֆիզիկապես։ Հենց վերջերս ֆաշիստական դահիճները մահապատժի ենթարկեցին Իսպանիայի կոմպարտիայի Կենտկոմի անդամ Խուլիան Գրիմաուին, որի միակ «մեղքն» այն էր, որ քառորդ դար առաջ նա զենքը ձեռքին կռվել է ֆաշիստական խռովարարների դեմ։

Բայց այսպես կոչված դեմոկրատական պետություններում ևս, ինչպես իրենց անվանում են ԱՄՆ-ը, ԳՖՌ-ն և մի շարք ուրիշներ, կոմպարտիային պատկանելը դիտվում է որպես հանցագործություն։ Այդ երկրներում շարունակ դատում են կոմունիստներին։ Ամերիկյան ու գերմանական կոմպարտիաների ականավոր շատ գործիչներ գտնվում են բանտերում։ Իսկ որքան ուժեր ու միջոցներ է ծախսում մոնոպոլիստական բուրժուազիան, որպեսզի «խաղաղ» ճանապարհով, իր պրոպագանդիստական ապարատի ջանքերով արատավորի կոմպարտիաների գործունեությունը, թուլացնի նրանց ազդեցությունը ժողովրդական մասսաների վրա։

Բացի դրանից, ռեակցիոն բուրժուազիան դիմում է ամենակատարելագործված միջոցների, նպատակ ունենալով վիժեցնել բանվոր դասակարգի գործողությունների միասնությունը, պառակտել նրա շարքերը։ Նա «համագործակցության» համար պարգևատրում է գործադուլներին չմասնակցողներին, հովանավորում է ռեֆորմիստական արհմիութենական կազմակերպություններին, նրանց պարագլուխներին եկամտաբեր պաշտոններ է տալիս արդյունաբերության մեջ ու պետական ապարատում։

Դըգոլյան ռեժիմի գաղափարախոսներից մեկը՝ բանկիր Շալանդոնը հռչակել է հետևյալ լոզունգը՝ «աշխատանքի և կապիտալի ասոցիացիա»։ Իտալիայի կառավարող շրջանները աջ սոցիալիստների աջակցությամբ, հայտարարել են, թե իբր երկրում սկսվել է ինչ-որ «ռեֆորմների դարաշրջան»։ Ըստ որում ոչ ֆրանսիական, ոչ իտալական կապիտալիստները չեն թաքցնում, որ իրենց ռեֆորմիստական քաղաքականության գլխավոր նպատակն է մեկուսացնել կոմունիստներին։

Հակառակ բուրժուազիայի կամքի, նրա այդ տակտիկան էլ արդյունք չի տալիս։ Կապիտալիստական երկրներում կոմունիստական պարտիաների ազդեցությունը և հեղինակու-



թյունը անշեղորեն աճում է։ Դրա վառ վկայությունն են Իտալիայում վերջերս տեղի ունեցած պառլամենտական ընտրությունները։ Հակառակ ամեն տեսակի անբարյացակամ մարդկանց «գուշակությունների», որոնք ենթադրում էին կոմունիստների դիրքերի թուլացում, Իտալիայի կոմպարտիան փայլուն հաղթանակ տարավ։ Ընտրությունների արդյունքները ցույց տվեցին, որ չորս ընտրողից մեկը քվեարկել է կոմունիստների օգտին։ Նախորդ ընտրությունների համեմատությամբ կոմպարտիայի օգտին տրված ձայների թիվը աճել է մեկ միլիոնով և հասել գրեթե 8 միլիոնի։ Միևնույն ժամանակ առաջատար բուրժուական պարտիան՝ քրիստոնեա-դեմոկրատական պարտիան կորցրել է մոտ 800 հազար ձայն։

Իտալիայի կոմպարտիայի խոշոր հաջողությունը պատահականություն չէ։ Դա աշխատավորների շահերի, խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար, մոնոպոլիստական կապիտալի տիրապետության, ռեակցիայի հարձակման դեմ նրա անդուլ պայքարի արդյունքն է։ Վերջին տարիներս կոմունիստներն ամրապնդել են իրենց կապերը աշխատավորների բոլոր խավերի՝ ոչ միայն բանվորների, այլև գյուղացիների, ինտելիգենցիայի հետ։ Կոմունիստների օգտին քվեարկեցին նաև ոչ մոնոպոլիստական բուրժուազիայի որոշ շրջաններ։ Այս ամենը վկայում է, որ Իտալիայի կոմպարտիան իտալական ժողովրդի իսկական պարտիան է։ Իսկապես Իտալիայի կոմունիստական պարտիան հետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանում իր թվական կազմով մոտ 1.700 հազար մարդ, մնում է որպես երկրի ամենախոշոր քաղաքական պարտիան։ Վերջերս տեղի ունեցած պառլամենտական ընտրություններից հետո նրա շարքերն ընդունվեցին մի քանի հազար նոր անդամ։ Միայն անցյալ տարի Ֆրանսիայի կոմպարտիան համալրվեց ավելի քան 48 հազար անդամով։ Չիլիի կոմպարտիայի թվական կազմը վերջին չորս տարում եռապատկվել է։ Երեք տարում Ճապոնիայի կոմպարտիայի անդամների թիվը մեծացել է ավելի քան երկու անգամ։

Կոմունիստների ազդեցությունն աճում է նաև այն երկրում, ուր բուրժուազիայի դիկտատուրան իրականացվում է ֆաշիստական ձևերով։ Օրինակ, Իսպանիայում, 1962 թվականի վիթխարի գործադուլներից հետո, որոնց կոմունիստները մասնակցեցին ամենաակտիվ կերպով, պարտիան մասսայական է դարձել արդյունաբերական կարևոր կենտրոններում և հիմնական գյուղատնտեսական շրջաններում։



digitised by A.R.A.R.@

Վ. Ի. Լենինը նշել է, որ «Դեմոկրատիան ահագին նշանակություն ունի, այն պայքարում, որ բանվոր դասակարգը հանուն իր ազատության մղում է կապիտալիստների դեմ» (Երկեր, հատ. 25, էջ 443)։ Պայքարը դեմոկրատիայի համար՝ սոցիալիզմի համար մղվող պայքարի բաղկացուցիչ մասն է։ Եվ կոմունիստները ամեն ինչ անում են, որպեսզի պահպանեն և ընդլայնեն աշխատավորների դեմոկրատական նվաճումները։

Ներկայիս կարևորագույն համադեմոկրատական խնդիրն է՝ պահպանել խաղաղությունը, կանխել համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը։ Կոմունիստներն ամենուրեք ընթանում են խաղաղության կողմնակիցների առաջին շարքերում։ Օրինակ, Անգլիայում նրանք ակտիվորեն մասնակցում են խաղաղության պաշտպանման ազգային կոմիտեի գործունեությանը, պաշտպանում են այնպիսի կազմակերպությունների, ինչպիսիք են «Միջուկային զինաթափման շարժումը» և «100-ի կոմիտեն»։ Այս ամենը նպաստում է մասսաների հետ կոմպարտիայի կապերի ամրապնդմանը, աշխատավորության շրջանում նրա հեղինակության բարձրացմանը։ Վերջին ժամանակներս նկատելիորեն ուժեղացել է թարմ ուժերի հոսանքը դեպի պարտիայի շարքերը։ Այժմ Անգլիայի կոմպարտիան ունի մոտ 35 հազար անդամ՝ գրեթե 10 հազարով ավելի 1957 թվականի համեմատությամբ։

Վերջին տարիներս կոմունիստների մասնակցությամբ խաղաղության պաշտպանության համար, սպառազինությունների մրցավազքի, ԱՄՆ-ի իմպերիալիստական քաղաքականության դեմ վիթխարի ելույթներ տեղի ունեցան Ճապոնիայում, Իտալիայում, ԳՖՌ-ում, Լատինական Ամերիկայի և Ասիայի մի շարք երկրներում։ Կոմունիստները հաստատակամորեն պայքարում են սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականության իրականացման համար։ Այդ քաղաքականությանը ջերմորեն հավանություն են տալիս ժողովրդական լայն զանգվածները։ Եվ դրա հետ չեն կարող հաշվի չնստել ամեն տեսակի ավանտյուրաների ոգեշնչողները, նոր պատերազմի հրձիգները։

Դեմոկրատիայի համար մղվող պայքարում կոմունիստները լայնորեն օգտագործում են տրադիցիոն բուրժուա-դեմոկրատական ինստիտուտները՝ պառլամենտները, տեղական ինքնավարության օրգանները և այլն։ Նրանք ելնում են այն բանից, որ մի բուռն մոնոպոլիստների և ժողովրդի հսկայական մեծամասնության միջև հակասությունների չը-



տեսնված սրման պայմաններում այժմ հնարավորություն է ստեղծվում պառլամենտում կայուն դեմոկրատական մեծամասնություն նվաճելու, այն բուրժուազիայի զենքից աշխատավորների իշխանության օրգանի վերածելու համար։

Իտալիայի, Ֆրանսիայի, Ֆինլանդիայի, Բելգիայի, Լյուքսեմբուրգի, Իսլանդիայի, Շվեդիայի, Հնդկաստանի, Ցեյլոնի, Չիլիի և մի շարք այլ պետությունների պառլամենտներում գոյություն ունեն ազդեցիկ կոմունիստական ֆրակցիաներ։ Կոմունիստ-դեպուտատները մերկացնում են բուրժուական ռեակցիայի քաղաքականությունը և միևնույն ժամանակ պայքարում պառլամենտում այնպիսի օրենքներ ընդունելու համար, որոնք համապատասխանեն աշխատավորների շահերին։ Կոմունիստների մասնակցությունն ընտրական կամպանիաներում պարտիայի քաղաքականությունը ժողովրդական մասսաներին պարզաբանելու և պարտիայի շուրջը նրանց համախմբելու կարևոր միջոց է։

Արդի դարաշրջանում միջազգային և ներքին բարենպաստ պայմաններ կան նորանոր երկրների սոցիալիզմին անցնելու համար։ Սակայն այդ անցման ձևերն ու մեթոդները կախված են այս կամ այն երկրի կոնկրետ պայմաններից։ Բանվոր դասակարգն ու նրա ավանգարդը՝ մարքսիստական-լենինյան պարտիաները ձգտում են սոցիալիստական ռևոլյուցիան իրականացնել խաղաղ եղանակով, առանց քաղաքացիական պատերազմի։

Սակայն եթե շահագործող դասակարգերը դիմադրություն ցույց տան, բռնություն գործադրեն ժողովրդի նկատմամբ, պրոլետարիատը ստիպված կլինի օգտագործել մյուս հնարավորությունը՝ ոչ խաղաղ անցումը սոցիալիզմին։ «... Անողոքության աստիճանը և դասակարգային պայքարի ձևերը,— նշում է Ն. Ս. Խրուշչովը,— կախված կլինի ոչ այնքան պրոլետարիատից, որքան ժողովրդի ճնշող մեծամասնությանը ռեակցիոն շրջանների կողմից ցույց տրվող դիմադրության ուժից, սոցիալիզմի համար պայքարի այս կամ այն փուլում այդ շրջանների կողմից բռնության գործադրումից»։

Հակամոնոպոլիստական ամուր ճակատի հիմքն է բանվոր դասակարգի գործողությունների միասնությունը։ Կոմունիստների և սոցիալ-դեմոկրատների համատեղ գործողությունները բազմապատկում են ուժերը բուրժուազիայի դեմ, խաղաղության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարում։ Այս կապակցությամբ կոմունիստները մեծ նշանակություն են տալիս արհմիութենական, երիտասարդական և մասսայական մյուս կազմակերպություններում կատարվող աշխատանքին։



digitised by A.R.A.R.@

Միասնության համար կոմունիստների անշահախնդիր պայքարը տալիս է իր պտուղները։ Ֆրանսիայի սոցիալիստական պարտիան, որն անցյալում նպաստել է դը Գոլի իշխանության գլուխ անցնելուն, այժմ, իր շարքային անդամների ճնշման տակ, ավելի ու ավելի է հակվում դեպի համագործակցությունը կոմունիստների հետ։ Պառլամենտական վերջին ընտրությունների ժամանակ կոմունիստները, սոցիալիստները և մյուս դեմոկրատները միասնաբար էին գործում երկրի գրեթե բոլոր դեպարտամենտներում։ Դրա շնորհիվ կոմունիստների մանդատների թիվը 10-ից հասավ 41-ի, սոցիալիստներինը՝ 40-ից 65-ի, իսկ աջերի դիրքերը խիստ թուլացան։

Չիլիում կոմունիստները, սոցիալիստները և մյուս ձախ կազմակերպությունները ստեղծել են ռևոլյուցիոն ժողովրդական գործողության ճակատ, որը ազգային ժողովի վերջին ընտրություններում (1961 թ. մարտ) իր դեպուտատների թիվը 24-ից հասցրեց 40-ի։ Կոմունիստների և ձախ սոցիալիստների գործողությունների միասնությունը տրադիցիա է դարձել Ուրուգվայում, Արգենտինայում և լատինաամերիկյան մի շարք այլ պետություններում։

Պայքարելով սոցիալիստների հետ գործողության միասնության համար, կոմունիստները միևնույն ժամանակ չեն թուլացնում պայքարը մարքսիստական-լենինյան գաղափարախոսության անաղարտության, պրոլետարիատի ռևոլյուցիոնականացման համար։ Ֆրանսիայի, Ավստրիայի կոմպարտիաները սոցիալ-դեմոկրատներին խիստ քննադատել են այն բանի համար, որ նրանք վերանայել են ծրագրային փաստաթղթերը, նպատակ ունենալով լիովին բուրժուականացնել իրենց պարտիաները, հրաժարվել սոցիալիստական որևէ նպատակից։ Այդ քննադատության ազդեցության տակ շարքային սոցիալ-դեմոկրատները այժմ իրենց պարագլուխներից ավելի ու ավելի են պահանջում իրականացնել ավելի ձախ քաղաքականություն։

Կապիտալիստական երկրների կոմունիստական պարտիաներն անդուլ կերպով, ամեն օր աշխատավորներին պարզաբանում են մարքսիզմ-լենինիզմի իրականացված մեծ գաղափարները, ընդգծում են սոցիալիստական լագերի, որպես միջազգային ռևոլյուցիոն պրոցեսի հիմքի և գլխավոր ուժի դերը։ Նրանք վճռականաբար պայքարում են ռեակցիոն բուրժուական գաղափարախոսության դեմ, ժողովրդական մասսաների վրա նրա քայքայիչ ազդեցության դեմ։ Այդ նպատակով կոմունիստները լայնորեն օգտագործում են ագիտացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցները։ Անընդհատ ա-



ճում են կոմպարտիաների կողմից հրատարակվող թերթերի ու ժուռնալների տիրաժները։ Մարքսիստական-լենինյան պարտիաների գաղափարական աշխատանքը նպաստում է աշխատավորների նորանոր խավերի գրավմանը, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում մասսաների համախմբմանը։

Միջազգային կոմունիստական շարժման կարևոր ջոկատ են Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի զարգացող երկրների կոմպարտիաները։ Նույնիսկ Աֆրիկայի ամենահետամնաց շրջաններում, որտեղ դասակարգային հարաբերությունները և դասակարգային պայքարը դեռ զարգացման առաջին փուլերում են գտնվում, կոմունիստներն ավելի ու ավելի լայնորեն են ծավալում իրենց գործունեությունը։ Հենց վերջերս կոմպարտիաներ հիմնադրվեցին Բեզուտոլենդում, Հյուսիսային Ռոդեզիայում, Զանզիբարում։

Տնտեսապես թույլ զարգացած երկրների կոմունիստները գաղութային ճնշումից և ռեակցիոն պրոիմպերիալիստական ռեժիմներից իրենց ժողովուրդների ազատագրման ամենակայուն և ամենահետևողական մարտիկներն են։ Նրանք պաշտպանում են իսկապես հայրենասիրական բոլոր ուժերին, այդ թվում նաև ազգային մանր բուրժուազիայի վրա հենվող ուժերին։

Ալժիրի կոմունիստները կռվել են ազգային-ազատագրական բանակի առաջին շարքերում։ «Հարցաքննություն խոշտանգումով» գրքի հեղինակ Անրի Ալլեգի անունը դարձել է Ալժիրի կոմունիստների կայունության խորհրդանիշը։ Կոմունիստները նպաստեցին Եգիպտոսում և Իրաքում միապետության տապալմանը։ Ինդոնեզիայում շատ կոմունիստներ իրենց կյանքը զոհաբերեցին հոլանդական տիրապետությունից երկրի ազատագրման համար։

Հենց կոմունիստներն են դիկտատորական ռեժիմների դեմ անհաշտ պայքարում Հորդանանում, Սաուդյան Արաբիայում, Պարագվայում, Հայիթիում, Վենեսուելայում, Հարավային Վիետնամում։ Նրանք ստիպված են գործելու ամենադաժան տեռորի պայմաններում։

Բայց ոչ մի հալածանք ու ռեպրեսիա չի կարող թուլացնել կոմունիստական պարտիաների պայքարը ժողովուրդների կենսական շահերի, խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի համար։ Կոմունիստներն ուժեղ են ապագայի նկատմամբ իրենց հավատով, ժողովրդի հետ սերտ կապով, իրենց ինտերնացիոնալ համախմբվածությամբ։ Այդ համախմբվածությունը խարսխված է գաղափարական գրանիտե հիմքի՝ մարքսիզմ-լենինիզմի վրա, որն ապահովում է



digitised by A.R.A.R.@

կոմունիստների հայացքների ու գործողությունների միասնություն արդիականության հիմնական հարցերում։ Այդ միասնությունն իր արտահայտությունը գտավ միջազգային կոմունիստական շարժման համաժողովների՝ կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունների փաստաթղթերում։

Կոմունիստների ինտերնացիոնալ համախմբվածությունը ենթադրում է անհաշտ պայքար մարքսիզմ-լենինիզմից կատարվող շեղումների դեմ, ռևիզիոնիզմի և դոգմատիզմի, ինչպես նաև ձախ ֆրազյորության դեմ։ «Կոմունիստների համար,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման միասնությունը ամեն ինչից թանկ է։ Կոմունիստները իրենց պարտքն են համարում այդ միասնության էլ ավելի ամրապնդումը մարքսիզմ-լենինիզմի մեծ դրոշի ներքո»։

Սովետական Միության կոմունիստական պարտիան ամեն ինչ անում է միջազգային կոմունիստական շարժման շարքերն է՛լ ավելի համախմբելու համար։ ՍՄԿՊ-ի գործունեությունն օրինակ է ամբողջ աշխարհի կոմունիստական պարտիաների համար։ Այդ ՍՄԿՊ XXII համագումարում արտասանած իր ճառում լավ արտահայտեց Ֆրանսիայի կոմպարտիայի գլխավոր քարտուղար Մորիս Թորեզը։ Դիմելով Սովետական Միության կոմունիստներին, նա ասաց. «Դուք մեզ համար եղել և մնում եք որպես օրինակ, ամբողջ միջազգային կոմունիստական շարժման եղբայրական, ուշադիր և փորձված ավանգարդ։ Ձեր ջանքերը, ինչպես նաև ձեր զոհաբերությունները մեծ ավանդ հանդիսացան ամբողջ աշխարհի կոմունիզմի գործում»։

Մեր պարտիան այսուհետև ևս պատվով կարդարացնի այն մեծ վստահությունը, որը նրա նկատմամբ տածում են մյուս երկրների կոմունիստական պարտիաները։

Ե. ՀԱՄԲԱՐՑՈՒՄՈՎ

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտի սեկտորի վարիչ

7996-63



# ԿՈՒԲԱՅԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Ժողովրդական ռևոլյուցիայի 10-րդ տարեդարձի առթիվ)

1953 թվականի հուլիսի 26-ին 165 երիտասարդ ռևոլյուցիոներներ Ֆիդել Կաստրոյի գլխավորությամբ կազմակերպեցին հերոսական հարձակում Սանտյագո դե Կուբա քաղաքի կայազորի Մոնկադո զորանոցի վրա։

Այդ հերոսական հարձակումով սկսվեց Բատիստայի ռեժիմի դեմ մղվող երկար ու համառ պայքարը, որը 1959 թվականին պսակվեց հաղթանակով։ Թոթափելով իմպերիալիստների ծանր լուծը, սոցիալիստական Կուբան ձեռք է բերել հսկայական նվաճումներ։

Մինչև ռևոլյուցիան Կուբան սննդամթերքի 60 տոկոսը բերում էր ԱՄՆ-ից, ամբողջ մշակելի հողերի 60 տոկոսը պատկանում էր ամերիկյան մոնոպոլիաներին։

Ամերիկյան մոնոպոլիստները դաժանորեն թալանում էին երկիրը։ Իրենց տիրապետության վերջին 10 տարիներին նրանք երկրից տարան 4 միլիարդ դոլար շահույթ։

1959 թվականի մայիսի 17-ին ընդունվեց օրենք ագրարային ռեֆորմի վերաբերյալ, որը արագորեն կենսագործվեց։ Հարուստ հողատերերի ունեցվածքը ազգայնացվեց և հանձնվեց աշխատավոր գյուղացիությանը։

Պետությունը գյուղացիության համար կառուցել է բազմաթիվ բնակարաններ։ Միայն անցյալ տարի կառուցվել է 4.000 տուն։

Կապիտալիզմի տիրապետության ժամանակ շաքարեղեգնի հավաքումից հետո մոտ 7—8 ամիս գործազուրկ էր մնում 600 հազար մարդ։ Այժմ ազատագրված Կուբայում ամբողջապես վերացված է գործազրկությունը։ Կուբայի գյուղատնտեսության մեջ ստեղծված են 900 պետական տնտեսություններ։

Ռևոլյուցիան աշխատավոր ժողովրդին հանձնեց երկրի արդյունաբերությունը։ 1960 թվականի հոկտեմբերի 13-ի և 25-ի դեկրետներով ազգայնացվեցին 548 խոշոր ֆաբրիկա, գործարան, էլեկտրակայան, որոնք հիմնականում պատկանում էին ամերիկյան մոնոպոլիաներին։

Ռևոլյուցիոն կառավարության կոչով Կուբայի ժողովուրդը պայքարում է հայրենի խոշոր արդյունաբերություն ստեղծելու համար։ Հաջողությամբ է կատարվում առաջին չորսամյա պլանը (1962—1965 թթ.)։






digitised by A.R.A.R.@

Չորսամյակի տարիներին կգործարկվեն հարյուրից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ:

Չորսամյակի տարիներին նախատեսվում է պղպատի արտադրությունը ավելացնել տարեկան 500 հազար տոննա, նավթ՝ 2 միլիոն տոննա, կոբալտ՝ 2.650 տոննա և այլն:

Չորս տարում երկրում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա երկու անգամ:

1965 թվականին երկրում կգործեն ավտոմոբիլային, տրակտորային, տեքստիլ արդյունաբերության գործարաններ և այլն:

Կուբան աշխարհում առաջին տեղն է գրավում շաքարեղեգնի արտադրությամբ և արտահանությամբ: 1962 թվականին Կուբայի 160 գործարաններ մշակեցին 37 միլիոն տոննա շաքարեղեգն և արտադրեցին 4 միլիոն 880 հազար տոննա շաքար:

1965 թվականին շաքարեղեգնի արտադրությունը տարեկան կկազմի 7 միլիոն տոննա:

1961 թվականին Կուբայում ամբողջապես լիկվիդացվեց անգրագիտությունը: Այժմ երկրի տարրական դպրոցներում սովորում են մեկ միլիոն 220 հազար երեխա, 2 անգամ շատ, քան մինչև ռևոլյուցիան:

Ռևոլյուցիայի հաղթանակից հետո երկրում հիվանդանոցային մահճակալների թիվը ավելացել է երեք անգամ, իսկ բնակչության բուժսպասարկման համար պետական հատկացումները՝ 5 անգամ:

Գյուղական վայրերում կառուցվել են 60 հիվանդանոց և բազմաթիվ պոլիկլինիկաներ, բուժպունկտեր և այլն:

Կուբայում բժշկական պետական հաստատություններում այժմ աշխատում են 4.737 բժիշկ և 25 հազար բուժքույր:

Կապիտալիզմը բնակչության մեծ մասին քշել էր հետնախորշերը: Այժմ ազատագրված Կուբայում բնակարանային շինարարությունը ընդունել է չտեսնված թափ: Կառուցվել են տասնյակ հազարավոր տներ, որոնցում ապրում են բանվորների, գյուղացիների, ծառայողների ընտանիքները:

Կուբայի ռևոլյուցիոն կառավարությունը դիվանագիտական հարաբերություններ է հաստատել աշխարհի 60 երկրների հետ:

Կուբայի ժողովրդա-տնտեսական պլանի իրականացման գործում հսկայական օգնություն են ցույց տալիս Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները:



Լայն թափով կատարվում է մետալուրգիական ձեռնարկությունների վերակառուցումը, որոնք հագեցվում են սովետական սարքավորումներով: Այդ հնարավորություն կտա պղպատի արտադրությունը ավելացնել 3 անգամ:

ՍՍՌՄ-ի օգնությամբ այժմ Կուբայում կառուցվում է 16 արդյունաբերական ձեռնարկություն, կատարվում է երեք մեխանիկական գործարանների վերասարքավորում, տարվում են երկու խոշոր ջերմաէլեկտրակայանների շինարարական աշխատանքները:

ՍՍՌՄ-ի օգնությամբ Մարիելում կառուցվում է Կուբայի ամենախոշոր էլեկտրակայանը՝ 500 հազար կիլովատ հզորությամբ:

### ԱՌԱԾՆԵՐ ԵՎ ԱՍԱՑՎԱԾՔՆԵՐ

## ՈՒՍՄԱՆ ԵՎ ԳԻՏԵԼԻՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Գիտելիքներն ու իմաստությունը զարդարում են մարդուն:

Սովորելը երբեք ուշ չէ:

Չկա ավելի շատ հարստություն, քան գիտելիքները:

Գիտելիքները թանկ են փողից, հատու՝ սրից, ուժեղ՝ թնդանոթից:

Արծվի ուժը թևերի մեջ է, մարդու ուժը՝ գիտելիքների խորության մեջ:

Աշխարհին լուսավորում է արևը, իսկ մարդուն՝ գիտելիքները:

Մի հպարտացիր կոչումով, այլ հպարտացիր գիտելիքներով:

Ով չի սովորում, նա չի անում:

Ամեն ինչից քիչ իմանալ, նշանակում է ոչինչ չիմանալ:

Չիմանալը ամոթ չէ, ամոթ է չսովորելը:

Իմանալդ քիչ է, պետք է ուրիշներին էլ սովորեցնես:

Գիտության շտեմարանները բացվում են գիտելիքների բանալիով:

digitised by A.R.A.R.@

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՑՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Հանուն գաղափարական աշխատանքի մարտունակության

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրների մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Մարքսիզմ-լենինիզմը մեր դրոշն է, մեր մարտական զենքը, *ճառ, արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 30-ի համարում։*

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ— Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում։*

Պլենումի որոշումները մասսաներին, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 29-ի առաջնորդող հոդվածը։*

Միահամուռ և ջերմ հավանություն ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումներին, *ինֆորմացիոն հաղորդագրություն ՀԿՊ Կենտկոմի պլենումի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 6-ի համարում։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի արդյունքների և գաղափարական աշխատանքը բարելավելու ուղղությամբ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության խնդիրների մասին, *զեկուցում ՀԿՊ Կենտկոմի պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 7-ի համարում։*

## 2. ՍՄԿՊ-ն ամբողջ սովետական ժողովրդի պարտիան է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Մոսկվայի սովետի պլենումում 1922 թվականի նոյեմբերի 20-ին, *Երկեր, հ. 33, էջ 517—528, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կոոպերացիայի մասին, *Երկեր, հ. 33, էջ 555—565, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Լավ է քիչ, բայց լավ, *Երկեր, հ. 33, էջ 579—599, Հայպետհրատ, 1952։*



ՍՄԿՊ Կենտկոմի բաց նամակը՝ Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 16-ի համարում։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Վսեմ նպատակի մեծ ուղիներով, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 7-րդ համարում։*

Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ— Ամենաժողովրդականը, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 7-րդ համարում։*

Ի. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ— Կոմունիզմ կառուցողների պարտիան, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1963 թվականի 13-րդ համարում։*

## 3. Բամբակի, ծխախոտի, եգիպտացորենի լավ մշակությունը բարձր բերքի երաշխիքն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել գյուղատնտեսության զարգացման հաջողությունները։ Ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 104—112, Հայպետհրատ 1961։*

Մշակությունից է կախված բերքի բախտը, *«Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 9-ի առաջնորդող հոդվածը։*

Ինչպես որոշել եգիպտացորենի պահանջը սննդանյութերի նկատմամբ, *կոնսուլտացիա, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1963 թվականի 6-րդ համարում։*

## 4. Հանրային հոտն ապահովենք առատ կերով

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Հայկական ՍՍՌ կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, սովխոզների բանվորների և բանվորուհիների, գյուղատնտեսության մասնագետների և բոլոր աշխատողների 1963 թվականի սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 7-ի համարում։*

Հանրային հոտն ապահովել կերի առատ պաշարով, ՀԿՊ Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 12-ի համարում։*



digitised by A.R.A.R.@

## 5 Պետական և աշխատանքային կարգապահության պահպանումը մեր սրբազան պարտքն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում, Հայպետհրատ, 1962։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած ՌՍՖՍՌ-ի արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում 1963 թվականի ապրիլի 24-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 26-ի և 27-ի համարներում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Մարքսիզմ-լենինիզմը մեր դրոշն է, մեր մարտական զենքը, ճառ, արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 30-ի համարում։*

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ— Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում։*

## 6. Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելը խաղաղության ամրապնդման ուղին է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած 1961 թվականի հունիսի 21-ին Մոսկվայի հասարակայնության ներկայացուցիչների ժողովում, Հայրենական մեծ պատերազմի 20-ամյակի կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունիսի 22-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ելույթ ՍՍՌՄ զինված ուժերի զինվորական ակադեմիաների շրջանավարտների ընդունելությունում 1963 թվականի հունիսի 26-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 27-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած 1963 թվականի հուլիսի 2-ին Բեռլինի միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 3-ի համարում։*

ՀԿՊ Կենտկոմի Ստ. Շահումյանի անվան քաղաքական լուսավորության ռեսպուբլիկական տուն

digitised by

## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

«Խաղաղության կորպուս»— *Այսպես է կոչվում ամերիկյան իմպերիալիստների կողմից աշխարհի բոլոր կողմերը, հատկապես Աֆրիկա, Ասիա, Լատինական Ամերիկա ուղարկվող լրտեսների և հետախույզների բանդան։ Նրա նպատակը ոչ թե խաղաղությունն է, այլ ԱՄՆ-ի համապատասխան օրգաններին աշխարհի բոլոր երկրների մասին ռազմական բնույթի տեղեկություններ տալը, արտասահմանում ԱՄՆ-ի օգտին քաղաքական պրոպագանդա մղելը, ամերիկյան նեոգաղութակալության համար ճանապարհ բաց անելը։*

*Ամերիկյան պրոպագանդան աղավաղելով իրականությունը, կեղծավորաբար պնդում էր, թե «խաղաղության կորպուսը» նպատակ ունի թույլ զարգացած երկրներին օգնել, որպեսզի նրանք ունենան ազգային մասնագետներ։ Այնինչ, դա իրականությանը չի համապատասխանում։*

*Որպես կանոն «խաղաղության կորպուս»-ի անդամները, տեղեր մեկնելուց առաջ, ենթարկվում են ռազմական պատրաստության։ Նրանք սովորում են հետախուզության գործը, հրազենից կրակելը, տեղանքը ուսումնասիրելը։ «Խաղաղության կորպուս»-ի յուրաքանչյուր անդամ պարտավոր է տիրապետել կապ պահպանելու տեխնիկային, ինչպես նաև դրսևորի նոր գործակալներ ներգրավելու շնորհք։*

*Ամերիկյան իմպերիալիստները որպեսզի կարողանան թույլ զարգացած երկրներում ամրապնդել իրենց դիրքերը, մեծ կարևորություն են տալիս գաղափարական դիվերսիաներին։ Դրա համար նրանք «խաղաղության կորպուս»-ի վրա պարտականություն են դրել, որպեսզի նա բնակչության մեջ ԱՄՆ-ի օգտին քաղաքական պրոպագանդա մղի, այսինքն, գաղափարական դիվերսիա կատարի, ԱՄՆ-ի կողմը գրավի ինտելիգենցիային, հատկապես երիտասարդությանը։*

*Մեկնելով այն վայրերը, որտեղ նշանակում են ստացել «խաղաղության կորպուս»-ի անդամները, նրանք անմիջապես ստեղծում են շտաբներ և սկսում ռազմական բնույթի և այլ տեղեկություններ տալ ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչությանը։*

*Օրերս ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քենեդին կոնգրեսի հաստատմանը ներկայացրեց մի օրինագիծ, որով նախատեսվում է «խաղաղության կորպուս»-ը ֆինանսավորել 108 միլիոն դոլարով։ Հենց այս փաստը ցույց է տալիս, թե ամերիկյան ներկա կառավարողները որքան մեծ կարևորություն են տալիս «խաղաղության կորպուս»-ի գործունեությանը, նրա գաղափարական դիվերսիային։*



A.R.A.R.@

*Գիտակցելով իրենց գործունեության հակամարդկային*
*բնույթը, արդեն շատ ամերիկացիներ կամովին հեռացել են*
*«խաղաղության կորպուս»-ից: Օրինակ, երիտասարդ ամերի-*
*կացի Ռոբերտ Ջիմմերմենը հեռանալով «խաղաղության կոր-*
*պուս»-ից «Նյուսուիկ» ամսագրին ուղարկել է մի նամակ, ո-*
*րով դատապարտել է «խաղաղության կորպուս»-ի գործունեու-*
*թյունը: Նա իր նամակում զայրույթով է խոսում ԱՄՆ-ում*
*տիրող ռասայական խտրականության մասին:*

*«Իրականում,— ասում է նա,— քանի դեռ չեն մեռել մեր*
*ռասայական նախապաշարմունքները... մեզանից ոչ ոք ա-*
*զատ չի եղել և չի կարող ազատ լինել»:*

Բուդդիզմ-բուդդայականություն— *Բուդդայականությունը*
*կրոն է, որը ծագել է Հնդկաստանում շատ հին ժամանակնե-*
*րում, մեր թվարկությունից առաջ 6-րդ դարում: Բուդդայա-*
*կանությունը տարածվել է Չինաստանում, Ճապոնիայում և*
*Արևելքի ուրիշ երկրներում: Բուդդայականությունը Վիետնա-*
*մում գերիշխող կրոն է: Երկրի հարավում բնակչության ավե-*
*լի քան երկու երրորդը բուդդայականություն է դավանում,*
*իսկ մնացած մասը կաթոլիկներ և ուրիշ դավանանքի բնա-*
*կիչներ են:*

*Վերջերս Հարավային Վիետնամի ռեակցիոն կառավարող-*
*ները Նգո-Դին Դյեմի գլխավորությամբ, որը դավանանքով*
*կաթոլիկ է, Գուե քաղաքում կոտորեցին շատ բուդդայական-*
*ների, պատճառաբանելով նրանց անհնազանդությունը: Բայց*
*իրական բնակչությանը գազանաբար սպանելու իսկական*
*պատճառը երկրում նգոդինդյեմականների վարած ֆաշիստա-*
*կան քաղաքականությունն է, որի նպատակն է սարսափահար*
*անելու միջոցով աշխատավորներին պահել ստրկության մեջ:*




digitised by A.R.A.R.@



# ԹՌԻՉՔՆԵՐ ԴԵՊԻ ՏԻԵԶԵՐՔ

*ՅՈՒ. Ա. ԳԱԳԱՐԻՆ (ՍՍՌՄ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1961 թվականի ապրիլի 12-ին *«Վոստոկ» տիեզերանավով:* 1,8 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 1 պտույտ, *նավը անցավ* 41 հազար *կիլոմետր տարածություն:*

*Գ. Ս. ՏԻՏՈՎ (ՍՍՌՄ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1961 թվականի օգոստոսի 6-ին *«Վոստոկ—2» տիեզերանավով:* 25,3 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 17 պտույտ, *նավը անցավ* 700 հազար *կիլոմետր տարածություն:*

*Ա. Գ. ՆԻԿՈԼԱԵՎ (ՍՍՌՄ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1962 թվականի օգոստոսի 11-ին *«Վոստոկ—3» տիեզերանավով:* 95 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 64 պտույտ, *նավը անցավ* 2,6 միլիոն *կիլոմետր տարածություն:*

*Պ. Ռ. ՊՈՊՈՎԻՉ (ՍՍՌՄ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1962 թվականի օգոստոսի 12-ին *«Վոստոկ—4» տիեզերանավով:* 71 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 48 պտույտ, *նավը անցավ* 2 միլիոն *կիլոմետր տարածություն:*

*Վ. Ֆ. ԲԻԿՈՎՍԿԻ (ՍՍՌՄ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1963 թվականի հունիսի 14-ին *«Վոստոկ—5» տիեզերանավով:* 119 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 81 պտույտ, *նավը անցավ* 3,3 միլիոն *կիլոմետր տարածություն:*

*Վ. Վ. ՏԵՐԵՇԿՈՎԱ (ՍՍՌՄ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1963 թվականի հունիսի 16-ին *«Վոստոկ—6» տիեզերանավով:* 71 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 48 պտույտ, *նավը անցավ* 2 միլիոն *կիլոմետր տարածություն:*

*Ջ. ԳԼԵՆ (ԱՄՆ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1962 թվականի փետրվարի 20-ին *«Ֆրենդշիպ—7» տիեզերանավով:* 4,9 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 3 պտույտ, *նավը անցավ* 125 հազար *կիլոմետր տարածություն:*

*Ս. ԿԱՐՊԵՆՏԵՐ (ԱՄՆ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1962 թվականի մայիսի 24-ին *«Ավրորա—7» տիեզերանավով:* 5 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 3 պտույտ, *նավը անցավ* 125 հազար *կիլոմետր տարածություն:*

*ՈՒ. ՇԻՐՐԱ (ԱՄՆ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1962 թվականի հոկտեմբերի 3-ին *«Սիգմա—7» տիեզերանավով:* 9,2 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 6 պտույտ, *նավը անցավ* 250 հազար *կիլոմետր տարածություն:*

*Գ. ԿՈՒՊԵՐ (ԱՄՆ)— Թռիչքը տեղի ունեցավ* 1963 թվականի մայիսի 15-ին *«Ֆեյթ—7» տիեզերանավով:* 34 ժամում *Երկրագնդի շուրջը կատարելով* 22 պտույտ, *նավը անցավ* 950 հազար *կիլոմետր տարածություն:*

A.R.A.R.@

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Ինդեքս՝ 77704

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

АГИТАТОРИ БЛОКНОТ

**№ 14**

**1963**

ՎՖ 10267 Պատվեր 585 Տիրաժ 8035

Հանձնված է արտադրության 10/VII 1963 թ.
Ստորագրված է տպագրության 17/VII 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և Հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։ Գինը 8 կոպ.։

digitised by